Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք։

ՀԿԿ Կենտկոմի
պրոպագանդայի և
ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ

ՕԳՈՍՏՈՍ 16 1961




ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ






Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։

## СОДЕРЖАНИЕ







# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐԻ ՄԵԾ ԾՐԱԳԻՐԸ

«Սովետական մարդկանց ներկայիս սերունդը կապրի կոմունիզմի օրոք»— *ՍՄԿԿ Ծրագրի նախագիծը եզրափակող այս խոսքերը կայծակի արագությամբ տարածվեցին հողագնդի բոլոր անկյուններում, թարգմանվեցին բոլոր լեզուներով, արձագանք գտան հարյուր միլիոնավոր մարդկանց մտքերում և սրտերում:*

*Վրա հասավ այն ժամանակը, երբ մարդը ոչ թե մտորումների ու երազանքի մեջ, այլ իրականում, իր սեփական ձեռքերով կերտում է կոմունիզմի մշտականգուն հոյակապ շենքը:*

*Այո՛, մենք կապրենք կոմունիզմի ժամանակ, և մեր ետևից վաղ թե ուշ կգնան բոլոր ժողովուրդները:*

*Ահա թե ինչու Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի նախագիծը հանդիսանում է մեր դարաշրջանի համաշխարհային-պատմական նշանակություն*



digitised by A.R.A.R.@

ունեցող մեծագույն փաստաթուղթը, ժողովուրդների պատմության քառուղիները լուսավորող փարոսը:

Վերոհիշյալ թեմայով զրույց անցկացնելիս ցանկալի է, որ ագիտատորն սկզբում համառոտակի կանգ առնի պարտիայի նախորդ ծրագրերի վրա, վերլուծի նրանց աչքի ընկնող դերը պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման և սոցիալիզմի կառուցման համար մղվող պայքարում:

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի նոր, երրորդ Ծրագիրը՝ Կոմունիստական հասարակարգի կառուցման Ծրագիրն է, որն ստեղծագործաբար ընդհանրացնում է սոցիալիզմի կառուցման պրակտիկան, համաշխարհային ռևոլյուցիոն շարժման բազմահարուստ փորձը, և մարդկության պատմության մեջ առաջին անգամ առաջ է քաշում կոմունիստական հասարակարգի կառուցման, ամբողջ մարդկության դարավոր երազանքի իրականացման համար ծավալուն պայքարի գիտականորեն հիմնավորված կոնկրետ պլանը:

Նոր Ծրագիրն ընդգրկում է կոմունիզմի համար մղվող պայքարում սովետական ժողովրդի, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, միջազգային կյանքի զարգացման բոլոր հիմնական հարցերը. նրանում հանգամանորեն շարադրված են պարտիայի խնդիրներն առաջիկա ժամանակաշրջանում, որի ընթացքում պետք է վճռվի մարդկության ճակատագիրը դեպի կոմունիզմ նրա առաջընթացի ճանապարհին:

Ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի այդ ոգեշունչ մանիֆեստում տրված է արդի դարաշրջանի ծավալուն բնորոշումը, որի հիմնական բովանդակությունը Հոկտեմբերյան ռևոլյուցիայի սկսած անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին, խոր կերպով վերլուծված են կապիտալիզմի զարգացման հիմնական օրինաչափությունները, ցույց է տրված, որ ամբողջ համաշխարհային կապիտալիստական սիստեմը հասունացել է պրոլետարիատի սոցիալիստական ռևոլյուցիայի համար, կապիտալիզմը՝ կոմունիզմով փոխարինելու համար:

Ծրագրի նախագծում համոզիչ կերպով ցույց է տրված Հոկտեմբերյան ռևոլյուցիայի և ՍՍՌՄ-ում սոցիալիզմի հաղթանակի համաշխարհային-պատմական նշանակությունը, ամփոփված են Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովրդի անցած պայքարի ու հաղթանակների փառապանծ ուղու արդյունքները:

«Դեպի սոցիալիզմ տանող գլխավոր ճանապարհը հարթված է»,— ասվում է նախագծում:

«Կոմունիզմը,—կարդում ենք նախագծում,—անդասակարգ հասարակարգ է արտադրության միջոցների միասնական համաժողովրդական սեփականությամբ, հասարակության բոլոր անդամների սոցիալական լիակատար հավասարությամբ, որտեղ մարդկանց համակողմանի զարգացման հետ մեկտեղ շարունակ զարգացող գիտության և տեխնիկայի հիման վրա կաճեն նաև արտադրողական ուժերը, հասարակական հարստության բոլոր աղբյուրները լիառատ կհորդեն և կիրագործվի «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջմունքների» մեծ սկզբունքը: Կոմունիզմը ազատ և գիտակից աշխատավորների բարձր կազմակերպված հասարակություն է, որտեղ կհաստատվի հանրային ինքնավարություն, հասարակության բարօրության համար կատարվող աշխատանքը բոլորի համար կդառնա առաջին կենսական պահանջ, գիտակցված անհրաժեշտություն, յուրաքանչյուրի ընդունակությունները կգործադրվեն ժողովրդի համար առավելագույն օգտավետությամբ»:



Եվ այդ հասարակարգի կառուցումը հեռավոր ապագայի հարց չէ, այն կառուցվում է այսօր, սովետական ստեղծարար ժողովուրդն իր հերոսական աշխատանքով օրեցօր մոտենում է կոմունիզմի բաղձալի ափերին:

Զրույցի այս բաժնում անհրաժեշտ է ունկընդիրներին խոր կերպով պարզաբանել կոմունիստական շինարարության գլխավոր խնդիրներն ու հիմնական էտապները:

Խոսելով Սովետական իշխանության տարիներին ժողովրդական տնտեսության զարգացման բնագավառում սովետական ժողովրդի ձեռք բերած վիթխարի հաղթանակների մասին, ագիտատորը պետք է հանգամանորեն պարզաբանի, թե ինչ է արվելու մեր երկրում 20 տարվա ընթացքում պարտիայի և սովետական ժողովրդի գլխավոր տնտեսական խնդիրը՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման խնդիրը լուծելու համար:

Մեր պլանները բնութագրող թվերի մեջ հնչում է կոմունիզմի կառուցման սիմֆոնիան:

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման վիթխարի խնդրի մասին գաղափար կազմելու համար բավական է նշել, որ արդյունաբերական արտադրանքի ծավա-

լը 10 տարում մեր երկրում պետք է ավելանա մոտ 2,5 անգամ, իսկ 20-տարվա ընթացքում՝ առնվազն 6 անգամ։ Դա նշանակում է, որ 1980 թվականին Սովետական Միությունը շատ հետ կթողնի ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրության այժմյան ընդհանուր ծավալը։

Մեր արդյունաբերությունը երկրորդ տասնամյակի վերջին տարեկան կարտադրի 2.700—3000 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա և կձուլի մոտավորապես 250 միլիոն տոննա պողպատ։

Բուռն թափով զարգանալու են քիմիական արդյունաբերությունը, մեքենաշինությունը, տրանսպորտը, ռեակտիվ տեխնիկան, կապի բոլոր միջոցները, ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը։ Առանձնահատուկ ուշադրություն է դարձվելու արտադրության բոլոր ճյուղերի և տեսակների տեխնոլոգիայի մշտական կատարելագործմանը, արդյունաբերության ավելի ու ավելի ռացիոնալ տեղաբաշխմանը, գիտատեխնիկական առաջադիմության առավելագույն արագացմանը, ձեռնարկությունների մասնագիտացմանն ու կոոպերացմանը։

Ծրագրի նախագծում նշվում է, որ հզոր արդյունաբերության հետ մեկտեղ ծաղկուն,



բազմակողմանիորեն զարգացած և բարձր մթերատու գյուղատնտեսության ստեղծումը կոմունիզմի կառուցման պարտադիր պայմանն է։ Կազմակերպելով գյուղատնտեսության արտադրողական ուժերի հզոր վերելքը՝ պարտիան խնդիր է դնում. ա) ստեղծել բնակչության համար սննդամթերքի, իսկ արդյունաբերության համար հումքի առատություն, բ) ապահովել սովետական գյուղի աստիճանական անցումը կոմունիստական հասարակական հարաբերություններին, հիմնականում վերացնել քաղաքի և գյուղի տարբերությունները։ Այդ խնդիրների լուծումը պահանջում է բազմակողմանիորեն մեքենայացնել և ինտենսիֆիկացնել գյուղատնտեսությունը, բարձրացնել բոլոր կոլտնտեսություններում և սովխոզներում հողագործության և անասնաբուծության կուլտուրան, շեշտակիորեն բարձրացնել բոլոր կուլտուրաների բերքատվությունը, ավելացնել արտադրանքի ստացումը յուրաքանչյուր հեկտարից՝ աշխատանքի ու միջոցների ծախսումների ըստ ամենայնի խնայողությամբ։

Կոմունիզմի ուղիով գյուղի հետագա առաջընթացը տեղի կունենա սոցիալիստական տնտեսության երկու ձևերի՝ կոլտնտեսու-

թյունների և սովխոզների զարգացման և կատարելագործման ճանապարհով։

Կոլտնտեսային կարգը, ասված է նախագծում, սովետական սոցիալիստական հասարակության անկապտելի մասն է, դեպի կոմունիզմ գյուղացիության աստիճանական անցման՝ Վ. Ի. Լենինի նշած, պատմականորեն ստուգված ուղին։

Նշելով կոլտնտեսային կարգի մեծագույն առավելությունները և կենսունակությունը, ագիտատորը պետք է ընդգծի, որ կոլտնտեսային ձևը լիովին համապատասխանում է գյուղի ժամանակակից արտադրողական ուժերի մակարդակի ու դրանց զարգացման պահանջներին, թույլ է տալիս արդյունավետ կերպով կիրառել նոր տեխնիկան ու գիտության նվաճումները, ռացիոնալ ձևով օգտագործել աշխատանքային ռեսուրսները։ Կոլտնտեսությունը, որպես տնտեսության հանրային ձև, ապահովում է արտադրության կառավարումը հենց կոլտնտեսականների կողմից, ծավալում է նրանց ստեղծագործական նախաձեռնությունը, կոլտնտեսականներին դաստիարակում է կոմունիզմի ոգով։ «Կոլտնտեսությունը կոմունիզմի դպրոց է գյուղացիության համար»,—կարդում ենք նախագծում։ Ծրագրում ընդգծվում



է բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության անխախտ դաշինքի ամրապնդման քաղաքական և սոցիալ-տնտեսական վճռական նշանակությունը ՍՍՌՄ-ում կոմունիզմի կառուցման համար։

Այնուհետև զրույցի ընթացքում պետք է կանգ առնել գյուղատնտեսական մթերքների ասպարեզում ամբողջ բնակչության ու ժողովրդական տնտեսության պահանջները լրիվ բավարարելու նպատակով պարտիայի առաջադրած խնդիրների վրա։ Նախատեսվում է 10 տարում գյուղատնտեսության արտադրանքի ընդհանուր ծավալը մեծացնել մոտավորապես 2,5 անգամ, իսկ 20 տարում՝ 3,5 անգամ։ Սովետական Միությունը առաջին տասնամյակում ԱՄՆ-ից կանցնի բնակչության մեկ շնչին ընկնող գյուղատնտեսական մթերքների արտադրությամբ։

Հացահատիկային կուլտուրաների համախառն արտադրությունը քսանամյակի ընթացքում կաճի ավելի քան երկու անգամ, իսկ դրանց բերքատվությունը կկրկնապատկվի։ Արագորեն կզարգանա անասնապահությունը։ Մսի արտադրությունը կավելանա առաջին տասնամյակում մոտ 3 անգամ, իսկ 20 տարում՝ մոտ 4 անգամ, կա-

թինը՝ 10 տարում՝ ավելի քան 2 անգամ, իսկ 20 տարում՝ գրեթե 3 անգամ։

Գյուղատնտեսության վերելքի Ծրագրի իրականացումը պայմաններ կստեղծի, որպեսզի կոլտնտեսային սեփականությունը աստիճանաբար մոտենա, իսկ հետագայում նաև ձուլվի համաժողովրդական սեփականության հետ՝ դառնալով մեկ միասնական կոմունիստական սեփականություն։

Կոլտնտեսային կարգի բնագավառում կատարված մեծագույն վերափոխումները վճռական ազդեցություն կունենան մարդկանց հասարակական հարաբերությունների վրա, կվերացվեն քաղաքի և գյուղի էական տարբերությունները, պայմաններ կպատրաստվեն բանվորների և գյուղացիների միջև եղած տարբերությունները վերացնելու համար, սովետական հասարակարգը անդասակարգ կոմունիստական հասարակարգի վերածելու համար։

Այնուհետև ագիտատորը տվյալներ կարող է բերել առաջիկա 20 տարում Սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարների մասին (այդ մասին փաստական հարուստ տվյալներ կան վերջերս ռեսպուբլիկայի պարտիական ակտիվի ժողովում ՀԿՊ Կենտկոմի առաջին



քարտուղար ընկ. Յա. Ն. Զարոբյանի զեկուցման մեջ, «Ս. Հ.», 10 օգոստոսի 1961 թ.)։

«Ամեն ինչ մարդու համար, հանուն մարդու բարօրության»,—այս սկզբունքը կարմիր թելի նման անցնում է Ծրագրի նախագծի միջով, դրա լավագույն վկայությունն է պարտիայի առաջադրած համաշխարհային պատմական նշանակություն ունեցող խնդիրը՝ «Սովետական Միությունում ապահովել ամենաբարձր կենսամակարդակ կապիտալիզմի ամեն մի երկրի համեմատությամբ»։ Զրույցի այս մասում ագիտատորը ունկնդիրներին մանրամասն պարզաբանում է այդ խնդրի իրականացման ուղղությամբ պարտիայի այն վիթխարի ձեռնարկումները, որոնք երջանկություն կբերեն բոլոր մարդկանց համար։

Նոր Ծրագրի նախագծում առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում պետական շինարարության և սոցիալիստական դեմոկրատիզմի հետագա զարգացման բնագավառում պարտիայի խնդիրների վրա․ «Սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի ծավալում ու կատարելագործում,—ասված է նախագծում,— բոլոր քաղաքացիների ակտիվ մասնակցություն պետության կառավարմանը, տնտեսական և կուլտուրական

շինարարության ղեկավարմանը, պետական ապարատի աշխատանքի բարելավում և նրա գործունեության նկատմամբ ժողովրդական վերահսկողության ուժեղացում՝ այս է սոցիալիստական պետականության զարգացման գլխավոր ուղղությունը կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում»:

Պարտիան խնդիր է դնում բարելավել Սովետների աշխատանքը, հասնել այն բանին, որ պետության կառավարման դպրոցն անցնեն նորանոր հարյուր հազարավոր և միլիոնավոր աշխատավորներ, որպեսզի սիստեմատիկաբար նորացվի ղեկավար օրգանների կազմը:

Նախագծում նշվում է, որ սոցիալիստական պետության զարգացումը կհանգեցնի այն բանին, որ նա վերափոխվի հասարակական կոմունիստական ինքնավարության:

Ազգային հարաբերությունների բնագավառում պարտիան խնդիր է դնում էլ ավելի ամրապնդել սովետական ժողովուրդների լենինյան անխախտ բարեկամությունը և ապահովել բոլոր սովետական ազգերի էկոնոմիկայի և կուլտուրայի բազմակողմանի զարգացումը, նրանց իրավունքների ընդլայնումը տնտեսական և կուլտուրական շինարարության գործում, նպաստելու ազգային



կուլտուրաների հետագա փոխհարստացմանն ու մերձեցմանը, ապահովել ՍՍՌՄ ժողովուրդների ազատ զարգացումը, յուրաքանչյուր քաղաքացու համար ապահովել լիակատար ազատություն՝ խոսելու, իր երեխաներին դաստիարակելու և ուսման տալու ցանկացած լեզվով, թույլ չտալով ոչ մի արտոնություն, սահմանափակում, կամ հարկադրանք այս կամ այն լեզվի գործածության հարցում:

Մայրենի լեզվի հետ մեկտեղ ռուսաց լեզուն սովորելը յուրաքանչյուր ազգի և ազգության հաղորդակից է դարձնում ՍՍՌՄ մյուս բոլոր ժողովուրդների կուլտուրական նվաճումներին և համաշխարհային կուլտուրային: Եվ դա միանգամայն հասկանալի է: Ռուսաց լեզուն փաստորեն դարձել է ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների ազգամիջյան հաղորդակցման և համագործակցության ընդհանուր լեզու:

Նոր Ծրագրի նախագծում հստակորեն ձևակերպված են պարտիայի խնդիրները աշխատավորների կոմունիստական դաստիարակության, կրթության, գիտության և կուլտուրայի բնագավառում:

«Պարտիան արդի էտապում գաղափարական աշխատանքում գլխավորն է համարում՝

բոլոր աշխատավորներին դաստիարակել բարձր գիտակցականության և կոմունիզմի նկատմամբ հավատարմության, աշխատանքի ու հանրային տնտեսության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով, լիովին հաղթահարել բուրժուական հայացքների ու բարքերի մնացուկները, բազմակողմանիորեն, ներդաշնակորեն զարգացնել անհատին, ստեղծել հոգևոր կուլտուրայի իսկական հարստություն»:

Լայն հեռանկարներ են բացվում ժողովրդական կրթության, գիտության, կուլտուրական շինարարության, գրականության և արվեստի բնագավառում:

Համառոտակի սրանք են Կոմունիստական պարտիայի խնդիրները ներքին քաղաքականության բնագավառում: Սովետական Միությունը կոմունիստական շինարարության խնդիրները լուծում է ոչ թե մենակ, այլ սոցիալիստական երկրների եղբայրական ընտանիքում:

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը սոցիալիզմի և կոմունիզմի ուղիով ընթացող, ընդհանուր շահերի ու նպատակների միասնությամբ, միջազգային սոցիալիստական





համերաշխության սերտ կապերով միավորված ազատ ու սուվերեն ժողովուրդների սոցիալական, տնտեսական ու քաղաքական համագործակցություն է:

Այստեղ ագիտատորը կոնկրետ փաստերով պատմում է համաշխարհային սոցիալիստական համագործակցության, ժողովուրդների միասնության, տնտեսական, քաղաքական և կուլտուրական համագործակցության և սոցիալիզմի ու կոմունիզմի ուղիով նրանց հետագա առաջընթացի հեռանկարների մասին:

Ծրագրի նախագծում ընդգծվում է այն միտքը, որ սոցիալիստական պետությունների զարգացումը նրանց համար ապահովում է սոցիալիզմի կառուցման ժամկետները կրճատելու հնարավորություն, բացում է նրանց ավելի կամ պակաս միաժամանակյա, պատմական մեկ դարաշրջանի շրջանակներում կոմունիզմին անցնելու հեռանկար:

ՍՄԿՊ-ն և սովետական ժողովուրդը անում են ամեն հնարավոր բան սոցիալիստական համագործակցության բոլոր ժողովուրդներին սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գործում աջակցելու համար:

Արտաքին քաղաքականության մեջ ՍՄԿՊ-ի գլխավոր նպատակն է՝ ՍՍՌՄ-ում

կոմունիստական հասարակարգի կառուցման
ու սոցիալիզմի համաշխարհային սիստեմի
զարգացման համար ապահովել խաղաղ
պայմաններ և բոլոր խաղաղասեր ժողո-
վուրդների հետ համատեղ ջանքերով մարդ-
կությանը փրկել համաշխարհային բնաջնջող
պատերազմից։

Արդիականության հիմնական հարցը պա-
տերազմի և խաղաղության հարցն է։

Եթե մեր երկիրը հետևողականորեն վա-
րում է խաղաղության և ժողովուրդների ան-
վտանգության ապահովման, հասարակական
տարբեր կառուցվածք ունեցող պետություն-
ների հետ խաղաղ գոյակցության քաղաքա-
կանություն, ապա իմպերիալիստական պե-
տությունները համառորեն հրաժարվում են
ընդունել մեր խաղաղասիրական առաջար-
կությունները և բացեիբաց հայտարարում են
ՍՍՌՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների
վրա հարձակման իրենց ցնորամիտ պլաննե-
րի մասին։

Սակայն սոցիալիստական հզոր լագերի,
ոչ սոցիալիստական խաղաղասեր պետու-
թյունների, միջազգային բանվոր դասակար-
գի և խաղաղության գործը պաշտպանող բո-
լոր ուժերի միացյալ ջանքերով կարելի է
կանխել համաշխարհային պատերազմը։



«Պատերազմները վերացնելը,— ասվում
է նախագծում,— երկրագնդի վրա հավիտե-
նական խաղաղություն հաստատելը կոմու-
նիզմի պատմական միսիան է»: Սովետական
ժողովուրդը հաստատ համոզված է, որ խա-
ղաղության գործը կհաղթանակի ամբողջ
աշխարհում։

Պարտիան և ամբողջ սովետական ժողո-
վուրդը քաղաքական և աշխատանքային
հսկայական ոգևորությամբ ընդունեցին լե-
նինյան Կենտրոնական Կոմիտեի այդ դարա-
կազմիկ փաստաթուղթը։ Ագիտատորը մեր
առօրյայի, տեղական կյանքից վերցրած օ-
րինակներով կարող է ցույց տալ, թե ինչպի-
սի աշխատանքային հաջողություններով են
դիմավորում քաղաքի և գյուղի աշխատա-
վորները հարազատ պարտիայի XXII համա-
գումարը։

Կոմունիստական պարտիայի պատմա-
կան մեծագույն փաստաթղթերի առաջ բե-
րած հայրենասիրական խանդավառությունը
զուգակցվեց տիեզերական տարածության
նվաճման ճանապարհին մեր ժողովրդի մի
նոր աշխարհացունց սխրագործությանը։
1961 թվականի օգոստոսի 6-ին «Վոստոկ-2»
տիեզերանավով երկրի շուրջը տիեզերա-
կան երթի մեկնեց Սովետական Միության

*քաղաքացի, Կոմունիստական պարտիայի արժանավոր զավակ Գերման Տիտովը. 25 ժամ տևող տիեզերական ուղևորության ընթացքում նա կտրեց-անցավ ավելի քան 700 հազար կիլոմետր ճանապարհ և ծրագրով նախատեսված առաջադրանքները կատարելուց հետո հաջողությամբ վայրէջք կատարեց սովետական հողում:*

*Զրույցի վերջում ագիտատորը նշում է, որ Սովետական Միության Կոմունիստական պարտիան կոմունիզմի կառուցման գործում սովետական ժողովրդի հաղթանակների կազմակերպիչն ու ոգեշնչողն է:*

*Սովետական ժողովուրդը կոմունիզմ է կառուցում Կոմունիստական պարտիայի, ընկեր Ն. Ս. Խրուշչովի գլխավորած լենինյան Կենտրոնական Կոմիտեի փորձված ղեկավարությամբ: Սովետական մարդկանց անսահման ուրախություն է պատճառում նախագծի այն հետևությունը, որ բանվոր դասակարգի Կոմունիստական պարտիան դարձել է սովետական ժողովրդի ավանգարդը, ամբողջ ժողովրդի պարտիան, աճել է նրա ղեկավարող և ուղղություն տվող դերը հասարակական կյանքի բոլոր բնագավառներում:*

«Պարտիան գոյություն ունի ժողովրդի համար, նրան ծառայելու մեջ է տեսնում իր



գործունեության իմաստը»*— ասված է Ծրագրի նախագծում:*

*ՍՄԿՊ-ն ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի պարտիա է, մեր ժամանակի ամենաառաջավոր գաղափարների, մարքսիզմ-լենինիզմի գաղափարների հանրաճանաչ դրոշակակիրը:*

*Մշակելով Ծրագրի նախագիծը՝ պարտիան մարքսիզմ-լենինիզմի գանձարանը հարստացրեց նոր դրույթներով ու եզրակացություններով, լուսավորեց դեպի կոմունիզմ տանող համայն մարդկության ուղին:*

*Կոմունիզմի կառուցումը ՍՍՌՄ-ում կլինի մարդկության մեծագույն հաղթանակը նրա ամբողջ բազմադարյան պատմության ընթացքում: Կոմունիզմը մարդկությանը կազատագրի սոցիալական անհավասարությունից, ճնշման ու շահագործման բոլոր ձևերից, պատերազմների սարսափներից և աշխարհում կհաստատի Խաղաղություն, Աշխատանք, Ազատություն, Հավասարություն և Երջանկություն:*

Խ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

# ԶՐՈՒՅՑ ՍՄԿՊ ՆՈՐ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԾԻ ՄԱՍԻՆ

Մենք բոլորս պարտիայի նոր Ծրագրի
նախագծի՝ մեր դարաշրջանի մարքսիստա-
կան-լենինյան մեծագույն փաստաթղթի վիթ-
խարի տպավորության տակ ենք։ Բայց ահա
հրապարակի վրա է նախահամագումարյան
ևս մի փաստաթուղթ՝ պարտիայի նոր Կանո-
նադրության նախագիծը, որը նույնպես քըն-
նարկվելու և հաստատվելու է ՍՄԿՊ առա-
ջիկա՝ XXII համագումարում։ Կարդալով
այն, խորանալով նրա յուրաքանչյուր կետի
մեջ, զգում ենք այն հզոր մոբիլիզացնող և
կազմակերպող ուժը, որ ունի նոր Կանոնա-
դրության նախագիծը։ Հանձին նոր Կանո-
նադրության պարտիան զինվում է կազմա-
կերպական հզոր զենքով, որը լիովին համա-
պատասխանում է կոմունիզմի ծավալուն
կառուցման ժամանակաշրջանի ծրագրային
խնդիրներին ու դրանց իրագործման միջոց-
ներին։ Եվ դա հասկանալի է, քանի որ կո-
մունիզմի ծավալուն կառուցման ժամանա-



կաշրջանը նշանակում է զարգացման նոր,
ավելի բարձր էտապ նաև բուն պարտիայի,
նրա քաղաքական, գաղափարական և կազ-
մակերպչական աշխատանքի համար։
«Կոմունիզմի ծավալուն կառուցման ժա-
մանակաշրջանը,— ասված է ՍՄԿՊ նոր
Ծրագրի նախագծում,— բնութագրվում է
Կոմունիստական պարտիայի, որպես սովե-
տական հասարակության ղեկավար և ուղ-
ղության տվող ուժի, դերի ու նշանակության
հետագա անմամբ։
Կոմունիստական հասարակությունը, ի
տարբերություն բոլոր նախորդ սոցիալ-
տնտեսական ֆորմացիաների, կազմակերպ-
վում է ոչ թե տարերայնորեն, այլ մարքս-
լենինյան պարտիաների կողմից ղեկավար-
վող ժողովրդական մասսաների գիտակցա-
կան և նպատակասլաց գործունեության հե-
տևանքով։ Իր շարքերում աշխատավորների
առավել առաջավոր ներկայացուցիչներին
միավորող, մասսաների հետ սերտ կապված,
ժողովրդի մեջ անսահման հեղինակություն
վայելող, հասարակության զարգացման
օրենքները գիտցող Կոմունիստական պար-
տիան ապահովում է կոմունիզմի կառուց-
ման ամբողջ աշխատանքի ճիշտ ղեկավա-
րումը, այդ աշխատանքին հաղորդում է կազ-

մակերպված, պլանաչափ, գիտականորեն հիմնավորված բնույթ»։

Ծրագրային այդ դրույթներն ամբողջովին իրենց մարմնացումն են գտել նոր Կանոնադրության նախագծում։ Նրանում ստեղծագործորեն ընդհանրացված են պարտիական շինարարության հարուստ փորձը, պարտիական կյանքի ու ղեկավարման լենինյան նորմաների, արդի ժամանակաշրջանում պարտիայի առջև ծառացած նոր խնդիրների հիման վրա որոշված են պարտիայի կազմակերպական կառուցվածքը, նրա ներքին կյանքի գլխավոր ղեկավար կանոնները, պրակտիկ գործունեության եղանակները։

«Սովետական Միության Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդի մարտական փորձված ավանգարդն է, որը կամավոր հիմունքներով միավորում է ՍՍՌՄ բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ինտելիգենցիայի առաջավոր, առավել գիտակից մասը». պարտիայի այդ նոր բնորոշումը, որ տրված է Կանոնադրության նախագծում, թափանցում է կոմունիստների սրտի խորքերը, նրանց մեջ բազմապատկում է հպարտության զգացումը, բարձրացնում նրանց պատասխանատվությունը այն բանի հանդեպ, որ իրենք կրում



են պարտիայի անդամի բարձր կոչումը։ Մի՞թե կա առավել մեծ պատիվ, քան լենինյան պարտիային զինվորագրվելը, քան մեր բոլոր ուժերն ու եռանդը, մեր միտքը, մեր բոլոր գիտելիքները, իսկ եթե պահանջվի՝ նաև կյանքը պարտիայի գործին նվիրաբերելը։

Խորանում ես մեկ առ մեկ պարտիայի անդամի կանոնադրական պարտականությունների մեջ, ծանոթանում յուրաքանչյուր կոմունիստին տրվող իրավունքներին և նորից ու նորից զգում այն բարձր դերն ու պատասխանատվությունը, որ ունի ամեն մի կոմունիստ պարտիայի քաղաքականությունը կյանքում կիրառելու, մեր երկրում կոմունիզմի հաղթանակը ապահովելու համար մղվող պայքարում։

Պարտիայի կյանքի օրենքն է՝ պարտիական կյանքի լենինյան նորմաների և ղեկավարության կոլեկտիվության սկզբունքի անշեղ պահպանումը, պարտիական մասսայի հանդեպ պարտիական օրգանների և նրանց աշխատողների պատասխանատվության բարձրացումը, բոլոր կոմունիստների ակտիվության ու ինքնագործունեության, պարտիայի քաղաքականության մշակման ու կենսագործման մեջ նրանց մասնակցության

աճման ապահովումը, քննադատության և
ինքնաքննադատության զարգացումը: Պար-
տիական կյանքի լենինյան սկզբունքների
հետ անհամատեղելի են անհատի պաշտա-
մունքը և դրա հետ կապված ղեկավարման
կոլեկտիվության, ներպարտիական դեմո-
կրատիայի և սոցիալիստական օրինակա-
նության խախտումները: Ծրագրային այդ
դրույթներն են ներթափանցված Կանոնադր-
րության նախագծի բոլոր գլուխներում և
կետերում: Պարտիան իր կյանքի անխախտ
օրենքն է համարում իր շարքերի գաղափա-
րական ու կազմակերպչական միասնու-
թյունն ու միաձուլությունը, բոլոր կոմու-
նիստների գիտակցական բարձր կարգա-
պահությունը: Առանձնապես սրելով քննա-
դատությունն ու ինքնաքննադատությունը
զարգացնելու անհրաժեշտությունը, Կանո-
նադրության նախագիծը պահանջում է, որ
քննադատությունը ճնշելու և քննադատու-
թյան համար հետապնդելու մեջ մեղավոր
անձինք պարտիական խիստ պատասխանա-
տվության ենթարկվեն՝ ընդհուպ մինչև
ՍՄԿՊ շարքերից նրանց վտարելը:

Պարտիայի կազմակերպական կառուց-
վածքի ղեկավար սկզբունքը դեմոկրատա-
կան ցենտրալիզմն է, և նոր Կանոնադրու-



թյան նախագիծը կրկին հաստատում է այդ
սկզբունքի անքակտելիությունը: Այդ փաս-
տաթղթում մեծ տեղ է տրված պարտիայի
ղեկավար օրգանների կազմի՝ յուրաքանչյուր
ընտրության ժամանակ ըստ համապատաս-
խան համամասնությունների թարմացնելու
հարցերին: Սա նոր պահանջ է, և դրա նշա-
նակությունը անգնահատելի է: Այդ սկզբուն-
քի կիրառման շնորհիվ պարտիայի ղեկա-
վար օրգաններում կսկսվի նոր թարմ ուժերի
ավելի լայն հոսանք, ղեկավարությունը
կդառնա ավելի գործունյա, մարտական, ըն-
դունակ պարտիական սկզբունքայնությամբ
դնելու և լուծելու ժողովրդա-տնտեսական
կարևոր հարցերը, ավելի վճռականությամբ
հանդես գալու պետական ու պարտիական
կարգապահության խախտումների դեմ, ա-
պահովելու պարտիայի առաջադրած խըն-
դիրների անթերի կատարումը: Իսկ ինչպե՞ս
է այժմյան պրակտիկան. երբեմն պարտիա-
յի քաղկոմի, շրջկոմի, սկզբնական պարտ-
կազմակերպության բյուրոյի կազմում տա-
րիներ շարունակ անընդմեջ առաջադրվում
են միևնույն մարդիկ: Կարծես թե նրանք
«սատծո կամքով» աշխարհ են եկել հենց
միայն նրա համար, որ անընդհատ ընտրվեն
այս կամ այն ղեկավար օրգանում: Բայց չէ՞

որ նրանցից ոմանք կամաց-կամաց սկսում են չտեսնել իրենց աշխատանքի թերությունները, մեծամտանալ, հանդուրժել պետական ու պարտիական կարգապահության խախտումների, պլանների վիժեցման փաստերը, մի բան, որից խիստ տուժում է ընդհանուր գործը: Նոր Կանոնադրության նախագիծը վերջ է տալիս այդ աննորմալ դրությանը:

Կանոնադրության նախագծում հանգամանորեն շարադրված են պարտիական ղեկավար օրգանների, սկզբնական պարտկազմակերպությունների ֆունկցիաները, տրված է լենինյան կոմերիտմիության, հասարակական մյուս կազմակերպությունների, արտապարտիական կազմակերպություններում պարտիական խմբերի դերն ու նշանակությունը պարտիային օգնելու, կոմունիզմի կառուցման նպատակին մասսաների ուժերը մոբիլիզացնելու գործում:

Վլադիմիր Իլյիչ Լենինի կողմից հիմնըված լինելով իբրև բանվոր դասակարգի առաջավոր ջոկատ, մեր պարտիան փորձություններով ու հաղթանակներով լի փառապանծ ուղի է անցել, դարձել սովետական ամբողջ ժողովրդի պարտիա և նրան վստահորեն առաջնորդում է դեպի այն հասարակարգը, որի դրոշի վրա կգրվի «Յուրաքան-



չյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ պահանջմունքների» կոմունիստական սկզբունքը: Պարտիան հաղթել և հաղթում է, որովհետև նա իր ամբողջ գործունեության մեջ ղեկավարվում է մարքս-լենինյան ուսմունքով: Այդ անընդհատ զարգացող, գիտականորեն հիմնավորված, կենսահաստատ ուսմունքի ստեղծագործական կիրառման հիման վրա է, որ պարտիան իր նոր Ծրագրում հանդիսավոր կերպով հռչակում է՝ սովետական մարդկանց ներկայիս սերունդը կապրի կոմունիզմի օրոք:

Սովետական Միության Կոմունիստական պարտիան,— նշված է Կանոնադրության նախագծում,— միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման անկապտելի բաղկացուցիչ մասն է: Նա հաստատ կանգնած է պրոլետարական ինտերնացիոնալիզմի մարքս-լենինյան փորձված սկզբունքների վրա, ակտիվորեն նպաստում է միջազգային ամբողջ կոմունիստական շարժման միասնության, բոլոր երկրների կոմունիստների մեծ բանակի հետ պարտիական կապերի ամրապնդմանը:

ՍՄԿՊ նոր Կանոնադրության նախագիծը պարտիայի Հունիսյան պլենումի որոշման հիման վրա հրապարակվել է ընդհանուրի

ծանոթության և այժմ լայնորեն քննարկվում է պարտիայի բոլոր անդամների ու անդամության թեկնածուների կողմից՝ սկզբնական պարտկազմակերպությունների դռնբաց ժողովներում, շրջանային ու քաղաքային պարտկոնֆերանսներում, իսկ առաջիկայում՝ ՍՄԿՊ Ծրագրի նախագծի հետ միասին կքննարկվի նաև Հայաստանի Կոմպարտիայի XXII համագումարում: Կոմունիստները միահամուռ հավանություն են տալիս պարտիական այդ կարևորագույն փաստաթղթերին, անում են իրենց առաջարկություններն ու դիտողությունները: Նրանք, ինչպես և բոլոր աշխատավորները, քաղաքական և ստեղծագործական հզոր վերելքի պայմաններում գնում են դեպի ՍՄԿՊ XXII համագումարը, որը կքննարկի և կհաստատի մեր դարաշրջանի մարքսիստական-լենինյան այդ երկու խոշորագույն փաստաթղթերը՝ պարտիային ու ժողովրդին զինելով կոմունիզմի կառուցման մարտական ծրագրով:

Ա. ԳԱՍՊԱՐՅԱՆ

# 700 ՀԱԶԱՐ ԿԻԼՈՄԵՏՐ՝ ԵՐԿՐԱԳՆԴԻ ՇՈՒՐՋԸ

*Մենք հավատում ենք և գիտենք, որ հեռու չէ այն ժամանակը, երբ մարդու կողմից կառավարվող տիեզերանավերը ճանապարհ կհարթեն դեպի Լուսին, դեպի արեգակնային համակարգության մոլորակները:*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ

Բերկրալի օրեր է ապրում սովետական ժողովուրդը: Մեր անծայրածիր երկրի բոլոր անկյուններում բուռն խանդավառություն, քաղաքական ու աշխատանքային վիթխարի ակտիվություն են առաջ բերել Սովետական Միության Կոմունիստական պարտիայի նոր Ծրագրի և Կանոնադրության նախագծերը, որոնց մեջ սովետական մարդիկ տեսնում են կոմունիզմի կառուցման հոյակապ պլանը: Սովետական մարդիկ իրենց անհողդողդ կամքն ու պատրաստակամությունն են հայտնում այսուհետև ևս հերոսական աշխատանքով ամրապնդելու մեր երկրի տնտեսա-

կան և ռազմական հզորությունը, կենսագործելու կոմունիզմի կառուցման մեծ խնդիրները։

Աշխարհը հիացած է սովետական գիտության և տեխնիկայի նվաճումներով։ Մարդկությունը դեռևս գտնվում էր սովետական քաղաքացի, կոմունիստ Յուրի Գագարինի՝ պատմության մեջ առաջին տիեզերական թռիչքի ազդեցության տակ, դեռ չէին լռել ողջույնի ծափերը երկրագնդի տարբեր մասերում, երբ աշխարհով մեկ կայծակի արագությամբ տարածվեց սովետական ժողովրդի հանճարի նոր, էլ ավելի մեծ հաղթանակի լուրը։ Օգոստոսի 6-ին և 7-ին սովետական «Վոստոկ—2» տիեզերանավով սովետական քաղաքացի, կոմունիստ, մայոր Գերման Ստեպանովիչ Տիտովը 25 ժամ 18 րոպեում երկրագնդի շուրջը կատարեց 17 պտույտ, անցնելով ավելի քան 700 հազար կիլոմետր տարածություն, և նախատեսված ծրագիրը կատարելուց հետո հաջող կերպով Հայրենիք վերադարձավ։ Սովետական ժողովուրդը, ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը ցնծությամբ ընդունեցին սովետական գիտության և տեխնիկայի այդ նոր, անօրինակ հաղթանակը։ Հերոս տիեզերագնաց Գերման



Տիտովին ուղարկած իր ողջույնի մեջ Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ սովետական ամբողջ ժողովուրդը, ամբողջ առաջադեմ մարդկությունը դարեդար կհիշեն նրա այս սխրագործությունը իբրև հանուն մարդկության ծառայության կատարված արիության և քաջության օրինակ։ Մի հերոսագործություն, որը մի անգամ ևս ցույց տվեց, թե ինչի է ընդունակ Կոմունիստական պարտիայի դաստիարակած սովետական մարդը։

«Այդ սխրագործության մեջ,— ասված է Սովետական Միության Կոմունիստական պարտիային և ժողովուրդներին, բոլոր երկրների ժողովուրդներին ու կառավարություններին, ամբողջ առաջադեմ մարդկությանն ուղղված ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության և Սովետական Միության կառավարության Դիմումի մեջ,— արտացոլվեցին Սովետական Միության՝ մեր գիտության ու տեխնիկայի, սովետական ամբողջ ժողովրդի նոր վիթխարի նվաճումները՝ աշխարհի ամենաառաջավոր սոցիալիստական հասարակարգի մեծ առավելությունները... Սովետական նոր տիեզերագնացի հոյակապ թռիչքը ցույց է տալիս, որ հեռու չէ այն ժամանակը, երբ

մարդու կողմից կառավարվող տիեզերանա-
վերը միջմոլորակային ուղեգծեր կհարթեն
դեպի Լուսին, Մարս, Վեներա: Մարդկու-
թյան առջև բացվում են տիեզերական տա-
րածությունը նվաճելու և դեպի արեգակնա-
յին համակարգության մոլորակները թռիչք-
ներ գործելու լայն հեռանկարները»:
Սովետական ժողովրդի հերոս զավակ
Գերման Տիտովը իր տիեզերական անօրինակ
երկարատև թռիչքը նվիրեց մեր հարազատ
Կոմունիստական պարտիայի XXII համա-
գումարին:
Հաղթանակած սոցիալիզմի մեր երկիրը,
որը վստահորեն ընթանում է մարդկության
ավանգարդում, գիտության և տեխնիկայի իր
վիթխարի նվաճումները ի սպաս է դնում աշ-
խարհի ժողովուրդների բարօրության, կա-
յուն խաղաղության ամրապնդման գործին:
Ինչպես ասված է պարտիայի Կենտկոմի,
ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության
և Սովետական կառավարության Դիմումի
մեջ, տիեզերքի յուրացման գործում մեր նը-
վաճումները պատահական չեն, նրանք վառ
կերպով հաստատում են սոցիալիզմ կառու-
ցած ժողովրդի մեծ հզորությունը, արտացո-
լում են կոմունիզմի օրինաչափ երթը: Մի-
միայն կոմունիզմ կառուցող ժողովուրդն է



ընդունակ այսքան կարճ ժամկետներում կա-
տարելու այնպիսի սխրագործություններ, որ
դարեր շարունակ երազել են համաշխարհա-
յին գիտության լավագույն ներկայացուցիչ-
ները:
Սովետական երկիրը տոնական ցնծու-
թյան մեջ է: Ամենուրեք տեղի են ունենում
միտինգներ ու ժողովներ, որոնցում սովե-
տական մարդիկ օրինական հպարտությամբ
են խոսում մեր գիտության ու տեխնիկայի
փառավոր նվաճումների, տիեզերքի յուրաց-
ման ասպարեզում ձեռք բերած համաշխար-
հային հաղթանակների, մայոր Տիտովի անօ-
րինակ սխրագործության մասին: Արտահայ-
տելով հայ ժողովրդի բուռն խանդավառու-
թյունը, ՍՍՌՄ ժողովրդական նկարիչ, Լե-
նինյան մրցանակի լաուրեատ, ծերունազարդ
վարպետ Մ. Սարյանը ասաց. «Երբ լսեցի
տիեզերական այս նոր թռիչքի մասին, ինձ
թվաց, թե ես երիտասարդացա մի քանի
տասնամյակով: Ու, թեև իմ 80-ն անց է,
բայց ես հավատում եմ, որ կապրեմ կոմու-
նիզմի օրոք, կտեսնեմ մարդկության դարա-
վոր երազանքի բարձունքը»:
«Ես լսում էի Տիտովի թռիչքի վերաբեր-
յալ ռադիոհաղորդումները և չէի ուզում հեռա-
նալ ռադիոընդունիչի մոտից,— ասաց ան-

վանի գրող Մովսես Արազին,— ինձ թվում էր, թե «Վոստոկ—2» տիեզերանավի մեջ Տիտովը միայնակ չէ, թե նրա հետ տիեզերք են թռել մեր ամբողջ ժողովուրդը, մեր գիտությունը, մեր տեխնիկան: Ես հուզված ունկնդրեցի Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովի հեռագիրը տիեզերագնաց Տիտովին: Ինչպիսի՜ հոգատարություն մարդու հանդեպ: Այո՛, Տիտովի թռիչքով ապրում էր մեր ամբողջ անծայրածիր Հայրենիքը»:

Տիտովի ճակատագիրը գտնվում էր մեր պարտիայի ձեռքում: Ահա ամենամեծ երջանկությունը, մեր սխրագործող ժողովրդի ամենամեծ բերկրանքը:

1961 թվականի օգոստոսի 9-ին մեր մայրաքաղաք Մոսկվան ցնծությամբ, տոնական հանդիսավորությամբ դիմավորեց անվեհեր տիեզերագնաց Գերման Տիտովին: Այդ օրը ոչ միայն մեր երկրի հայացքն էր ուղղված դեպի Մոսկվան, այլև ամբողջ մեր մոլորակի: Մոսկվայում, տիեզերագնացների այդ մայրաքաղաքում տոնվեց տիեզերքի յուրացման ուղղությամբ ձեռք բերված այդ մեծ հաղթանակը: Շքեղորեն զարդարված Մոսկվայի հարյուր հազարավոր բնակիչներ հավաքվել էին Վնուկովոյի օդանավակայանում, դուրս էին եկել փողոցներն ու հրապա-



րակները՝ հերոս օդաչուին արժանի կերպով դիմավորելու համար: Խիզախ տիեզերագընացը Կոմունիստական պարտիային, Սովետական կառավարությանը, ամբողջ սովետական ժողովրդին զեկուցեց արբանյակտիեզերանավով կատարած թռիչքն ավարտելու, տրված առաջադրանքները հաջողությամբ կատարելու մասին:

Սովետական ժողովուրդը ջերմորեն ընդունեց իր հերոս որդուն: Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ղեկավար Ն. Ս. Խրուշչովը հայրաբար ողջունեց Գերման Տիտովին, բարձր գնահատական տալով նրա կատարած սխրագործությանը: «Վոստոկ—2» տիեզերանավով տիեզերագնաց օդաչու ընկ. Տիտովի թռիչքը,— իր ելույթում ասաց Ն. Ս. Խրուշչովը Կարմիր հրապարակում կայացած միտինգում, սովետական գիտատեխնիկական մտքի լոկ հերթական նվաճումը չէ, սովետական մարդու խիզախության ու արիության շնորհիվ կատարված միայն սխրագործություն չէ: Այդ փաստը նշանակալից է իր հսկայական բովանդակությամբ: Նրանում կարծես թե կենտրոնացել են թե մեր առաջնակարգ ինդուստրիայի հզորությունը, թե սովետական գիտության ու տեխնիկայի մեծագույն նվա-

ճումները, թե սովետական կարգի բարերար կենսաբեր ուժը, որի պայմաններում բացահայտվում են մասսաների ձիրքերն ու ընդունակությունները, մարդ իսկական ազատություն է ստանում ստեղծարար աշխատանքի և ոգեշունչ ստեղծագործության համար։ Նրանում՝ այդ հիանալի փաստի մեջ արտացոլված են թե մեր ժողովրդի անցած պայքարի ու աշխատանքի ամբողջ փառավոր ուղին, թե մեր Հայրենիքի այսօրվա անհաղթահարելի հզորությունն ու վեհությունը, թե նրա սլացքը դեպի առաջ, դեպի նոր բարձունքներ, դեպի խաղաղության, ժողովուրդների ազատության և բարեկամության իդեալներ»։

Համաշխարհային մեծ նվաճման առթիվ սովետական ժողովրդին ջերմորեն շնորհավորեցին եղբայրական սոցիալիստական երկրների կառավարություններն ու ժողովուրդները, կոմունիստական ու բանվորական պարտիաների ականավոր գործիչները։ Արտահայտելով իրենց ժողովուրդների ջերմ զգացմունքները, Տիտովի երկարատև տիեզերական թռիչքի առթիվ ողջույնի հեռագրերում նրանք ընդգծում են կապիտալիզմի նկատմամբ սոցիալիզմի մեծագույն առավելությունները, որոնց շնորհիվ հնարավոր



դարձավ սովետական գիտության և տեխնիկայի այդ փառահեղ հաղթանակը։

Այս օրերին ՍՄԿՊ Կենտկոմի, ՍՍՌՄ կառավարության, ընկ. Ն. Ս. Խրուշչովի, Հերոս տիեզերագնաց Գերման Տիտովի անունով անվերջ շնորհավորանքներ են ստացվում աշխարհի բոլոր ծայրերից։

Այն ժամանակ, երբ իմպերիալիստները ռազմաշունչ ելույթներ են ունենում, պահանջում են ավելացնել իրենց զինված ուժերը և ռազմական հատկացումները, Սովետական Միությունը ճանապարհ է հարթում դեպի աստղերը, կոչ է անում բոլոր ուժերը գործադրել ամբողջ աշխարհում կայուն խաղաղություն ապահովելու համար։ Տիեզերքի յուրացման ուղղությամբ ձեռք բերած նվաճումները Սովետական պետությունը ծառայեցնում է ամբողջ մարդկության շահերին, խաղաղության շահերին։

Սովետական գիտության ու տեխնիկայի նոր մեծ հաղթանակը՝ տիեզերագնաց օդաչու Գերման Տիտովի երկարատև տիեզերական թռիչքը, մի վիթխարի առաջընթաց քայլ է միջմոլորակային ճանապարհորդությունների իրականացման ուղղությամբ։

Վ. ՍԱՀԱԿՅԱՆ

ԱՄԵՆ ԻՆՉ ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ԵՐՋԱՆԿՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

500

Ազգային եկամուտը

1980

400-450%

ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

ՍՄԿԿ ԾՐԱԳԻՐԸ

100%

1960








# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Պարտիան գոյություն ունի ժողովրդի համար, նրան ծառայելու մեջ է տեսնում իր գործունեության իմաստը

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— ՌԿ(բ)Պ Ծրագրի նախագիծը, *Երկեր, հատոր 29, էջ 101—156, Հայպետհրատ, 1951։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Ծառ Կոմունիստական պարտիայի դերի մասին, *Երկեր, հատոր 31, էջ 283—288, Հայպետհրատ, 1952։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդի ղեկավար և կազմակերպող ուժն է կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում, *Հայպետհրատ, 1959։*

Պարտիան կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում, *Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագիրը—Նախագիծ, էջ 166—174, Հայպետհրատ, 1961։*

## 2. Ամեն ինչ մարդու համար

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Ինչ է Սովետական իշխանությունը, *Երկեր, հատոր 29, էջ 295—296, Հայպետհրատ, 1951։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Սոցիալիզմի նյութական հիմքը և Ռուսաստանի էլեկտրիֆիկացիայի պլանը, *Երկեր, հատոր 32, էջ 591—592, Հայպետհրատ, 1952։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Սովետական ժողովրդի բարեկեցության անը: *ՍՄԿՊ XXI համագումարին տված զեկուցումից, Հայպետհրատ, 1959։*

Պարտիայի խնդիրները ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման բնագավառում, *Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագիրը—նախագիծ, էջ 110—121, Հայպետհրատ, 1961։*

## 3. Ժողովուրդը կոմունիզմի կառուցման վճռական ուժն է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Ելույթ ռադիոյով և հեռուստատեսությամբ 1961 թվականի օգոստոսի 7-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի օգոստոսի 8-ի համարում։*

Պարտիայի խնդիրները տնտեսական շինարարության, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ու զարգացման բնագավառում, *Սովետական Միության*



*Կոմունիստական պարտիայի Ծրագիրը—նախագիծ, էջ 76—121, Հայպետհրատ, 1961։*

Կոմունիզմի կառուցման Ծրագիրը, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի օգոստոսի 6-ի համարում։*

## 4. ՍՄԿՊ նոր Կանոնադրության նախագիծը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կանոնադրությունը—նախագիծ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի օգոստոսի 5-ի համարում։*

Պարտիայի ներքին կյանքի կոդեքսը, *«Ս. Հ.»-ի 1961 թվականի օգոստոսի 6-ի առաջնորդողը։*

## 5. Սովետական ժողովրդի մեծ հաղթանակը տիեզերական տարածության յուրացման գործում

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Ճառ Մոսկվայի աշխատավորների 1961 թվականի օգոստոսի 9-ի միտինգում, *նվիրված տիեզերագնաց օդաչու Գ. Ս. Տիտովի դիմավորմանը, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի օգոստոսի 10-ի համարում։*

Ընկեր Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ ողջույնի հեռագիրը Սովետական տիեզերագնաց, աշխարհում առաջին անգամ 25-ժամյա տիեզերական թռիչք կատարած մայոր Գեր-

ման Ստեպանովիչ Տիտովին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի օգոստոսի 8-ի համարում։*

Դեպի տիեզերական տարածություն սովետական երկրորդ տիեզերագնաց օդաչուի թռիչքի մասին, *ՏԱՍՍ-ի հաղորդագրությունը, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի օգոստոսի 8-ի համարում։*

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության և Սովետական Միության կառավարության Դիմումը Սովետական Միության Կոմունիստական պարտիային և ժողովուրդներին, բոլոր երկրների ժողովուրդներին ու կառավարություններին, ամբողջ առաջադեմ մարդկությանը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի օգոստոսի 8-ի համարում։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ հեռախոսազրույցը տիեզերագնաց Գ. Ս. Տիտովի հետ *1961 թվականի օգոստոսի 7-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի օգոստոսի 8-ի համարում։*

*Գ. Ս. ՏԻՏՈՎ*— Ճառ Մոսկվայի աշխատավորների 1961 թվականի օգոստոսի 9-ի միտինգում, *նվիրված տիեզերագնաց օդաչու Գ. Ս. Տիտովի դիմավորմանը, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի օգոստոսի 10-ի համարում։*

## 6. Նոր հաջողություններով նշանավորենք ՍՄԿՊ XXII համագումարը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Ելույթ ռադիոյով և հեռուստատեսությամբ *1961 թվականի օգոստոսի 7-ին, տպագրված «Ս Հ.»-ի 1961 թվականի օգոստոսի 8-ի համարում։*



Արժանավայել դիմավորենք ՍՄԿՊ XXII համագումարը, *սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման մասին նյութեր, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հուլիսի 27-ի համարում։*

Ռեսպուբլիկան պատրաստվում է պարտիայի համագումարին, *«Ս. Հ.»-ի 1961 թվականի հուլիսի 29-ի առաջնորդողը։*

Հաջողությամբ կատարենք ՍՄԿՊ XXII համագումարի պատվին ստանձնած սոցիալիստական պարտավորությունը, *ինֆորմացիա ՀԿՊ Կենտկոմի 9-րդ պլենումի մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հուլիսի 23-ի համարում։*

*ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ*— Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների մարտական խնդիրները, *գեկուցում ռեսպուբլիկայի պարտիական ակտիվի ժողովում, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի օգոստոսի 10-ի համարում։*

## 7. ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության նոր հաջողությունները

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Ելույթ ռադիոյով և հեռուստատեսությամբ 1961 թվականի օգոստոսի 7-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի օգոստոսի 8-ի համարում։*

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1961 թվականի առաջին կիսամյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին, *ՍՍՌՄ Մինիստրների Սովետին առընթեր Կենտրոնական Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հուլիսի 21-ի համարում։*

Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1961 թվականի առաջին կիսամյակի պետական պլանի կատարման արդյունքների մասին *Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հուլիսի 29-ի համարում։*

## 8. Նոր ուսումնական տարին

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Պարտիայի խնդիրները գաղափարախոսության, դաստիարակության, կրթության, գիտության ու կուլտուրայի բնագավառում, *Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագիրը—Նախագիծ, էջ 150—153, Հայպետհրատ, 1961։*

Ուսումնական տարին մոտ է, *«Ս. Հ.»-ի 1961 թվականի հուլիսի 22-ի առաջնորդողը։*



**Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ**



## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Տերյան.— *Երկերի ժողովածու, հատոր 2, 506 էջ, գինը 77 կոպ.*

Հ. Պարոնյան.— *Մեծապատիվ մուրացկանները, 86 էջ, գինը 29 կոպ.*

Էդ. Ջրբաշյան.— *Գրականության տեսություն, 517 էջ, գինը 74 կոպ.*

Գ. Ա. Շաֆարյան.— *Անտիբիոտիկների օգտագործումը անասնապահության մեջ, 61 էջ, գինը 7 կոպ.։*

Ա. Վարդանյան.— *Մահվան ամրոցում, 148 էջ, գինը 48 կոպեկ։*

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 16 1961 г.

ՎՖ 02255 Պատվեր 416 Տպաքանակ 8274

Հանձնված է արտադրության 12/VIII 1961 թ.։
Ստորագրված է տպագրության 19/VIII 1961 թ.։

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։
Գինը 8 կոպ.